դիտէին, իրականին մէջ գոյութիւն չունին: Այլ կարմիր ինքնաշարժին վարիչն է— որ մէկ միլիոն ֆրանքը շահելու դիտումով — ոստիկանութեան դիմած եւ ծանօթ մանրամասնութիւնները տուած է: Եւ որպէսզի Չեկան փոխ-վրէժի չդիմէ, սիրային պատմութիւն յերիւրուած է...:

Ոստիկանութիւնը կը խոստանայ քանի մը օրէն նոր մանրամասնութիւններ եւ անուններ տալ:

## Կանտի կը սաստկացնէ պայքարը

Պոմպէյէն կը հաղորդեն:— Կանտի իր պաշտօնաթերթին՝ «Երիտասարդ Հնդկաստան»ի մէջ բացէ ի բաց կը յայտարարէ թէ աղի տուրքին մասին քաղաքային անհնազանդութիւնը պիտի սկսի յառաջիկայ կիրակի (վաղը):

Ազգայնական ընդդիմադիրներու պետը փանթիտ Մոհան Մալավիյա իր հրաժարականը ղրկեց Օրէնսդիր ժողովին, բուռն նամակով մը, որուն մէջ կ'ըսէ թէ այլեւս չի կրնար գործակցիլ կառավարութեան մը, որ խիստ մեծ անարդարութիւններու կը հանդուրժէ եւ իւրաքանչիւր քաղաքացի զոհի մը կը վերածէ:

Փունայէն կը հեռագրեն թէ Քիրքիի զինարանը այրած է: Կը կարծուի թէ հրձիգներն են Կանտիի հետեւորդները:

## Քու - Քլուխ - Քլանը Ռուսիոյ մէջ

ՄՈՍԿՈՒԱ, 4 ապրիլ.— «Կրասնայեա Կազէտա» կը գրէ թէ Եամբուրգի (Լէնինգրադ) շրջանին մէջ տեսնուած են քառուչուէ հագուստներով ծածկուած մարդիկ, աչքերը փոսփոռով բոցավառ, որոնք իբրեւ «սատանաներ» կը նկատուին բնակչութեան կողմէ: Այս խորհրդաւոր մարդիկը կը յայտնեն թէ խորհրդային իշխանութիւնը պիտի կործանի մօտ օրէն եւ կոլխոզները պիտի անհետանան:

## Թուրք-Անգլիական համաձայնութիւնը

Վէնիզէլոս յայտարարած է «Ազգամ»ի թղթակցին թէ հելլէն կառավարութիւնը հաստատապէս որոշած է վերջնական համաձայնութիւն մը կնքել Թուրքիոյ հետ եւ թէ ստորագրութիւնը յապաղեցնող միջադէպերը շուտով պիտի հարթուին: Էնկիւրիի հելլէն դեսպանը ստացած է Թուրք կառավարութեան վերջին հրահանգները՝ բնակչութեանց փոխանակութեան եւ փոխանակելի ստացուածքներու հաշուեյարդարին մասին:

## Ի նպաստ Ալմազեանի

Հանրային կարծիքին մէջ նոր շարժում մը առաջ եկած է ի նպաստ Ալմազեանին, որուն անմեղութիւնը այլեւս ոչ մէկ կասկած կը վերցնէ: Բոլորն ալ վստահ են թէ երեքշաբթի օր Ամբաստանիչ ատեանը ոչ միայն ազատ պիտի արձակէ զայն, այլ իրեն դէմ եղած բոլոր ամբաստանութիւնները չեղեալ պիտի նկատէ:

Թերթերը այժմ չեն բաւականանար Ալմազեանի ազատ արձակումով այլ կը պահանջեն նաեւ որ պատժուի «Պընուա—Մաթիֆաս—Ամի եռրորդութիւնը»:



## Լաւ պատեհութիւն

Ծախու է մեկնումի պատճառաւ նպարեղէնի խանութ մը, ապրանքներով եւ սուրճի մեքենայով միասին: Հայաշատ կեդրոն, հիմնաւորուած գործ: Մանրամասնութիւններու համար դիմել 9 Rue Jouy Rouve, մեթրօ Պէլվիլ:



## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Հ. Մ. Ը. Մ.ի Պիյեանքուռի եւ Իսի լէ Մուլինօի մասնաճիւղը կը հրաւիրէ բոլոր սկաուտներու ծնողքները վաղը կիրակի ժամը 2.30ին, սկաուտական թէյասեղանի մը, 28 Rue Nationale Billancourt Պ. Սուրէն Նաւավարեանի ճաշասրահը: Կը հրաւիրուին սկաուտ արձանագրուիլ փափաքողները:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

13 Ապրիլ կիրակի իրիկուն ժամը 8.30ին, Théâtre Albert 1er 64 Rue du Rocher, Métro Gare St. Lazare.

Փարիզահայ Տրամաթիք Թատերախումբը Նախաձեռնութեամբ ՇԱՀԱՆ ՍԱՐԵԱՆի

կը ներկայացնէ Լ. ՇԱՆԹԻ „ՀԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ"ը



## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

ԻՍԻ ԼԷ-ՄՈՒԼԻՆՕԻ Ջաւարեան ենթակոմիտէի վռամեան, Մցօ եւ Մուրատ խումբերու բոլոր ընկերները անխտիր ժողովի կը հրաւիրուին վաղը կիրակի ժամը 3.30ին Ave. Verdunի ծայրի անկիւնի սրճարանը Café Tabacի դիմացը: Բացակաները նկատողութեան պիտի առնուին:

ՊՈՒԱ - ՔՈԼՈՆՊԻ «Եռագոյն» խումբի ժողովը՝այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 79 Rue des Chambards: Բացակաները նկատի պիտր առնուին:

ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Gare St. Lazareի դիմացի սրճարանը:

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ փոթորիկ խումբի ժողովը այսօրշաբաթ երեկոյ ժամը 8.30ին 33 Emile Zola (Անիէռ)ի սրճարանին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայանալ անդամատետրով: Բացակաները պատասխանատուութեան պիտի ենթարկուին:

### ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Ակնունի ենթակոմիտէի դասախօսական ժողովը՝ վաղը կիրակի առաւօտ ժամը10ին Ակումբին մէջ:

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Արմէն Գարօ, Գէորգ Չավուշ, Ջարդարեան, Քեռի եւ Քրիս խումբերը, այս երեքշաբթի ժամը 8.30ին սովորական վայրը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուներկայութիւնը պարտադիր է:

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր խումբերը վաղը կիրակի ժամը 2ին, սովորական հաւաքատեղին: Բացակաները նկատի պիտի առնուին:

ՏԷՍԻՆԻ կոմիտէի ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի իրիկուն ժամը 5.30ին Քաֆէ Ժարտէնի մէջ: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

### ՀՐԱՒԷՐ

Ա. Ե. Կ. Խաչի Փարիզի «Մանուկներու Պաշտպանութիւն» մասնաճիւղի բոլոր անդամներն ու անդամուհիները ընդհ. ժողովի կը հրաւիրուին,վաղը Կիրակի ժամը 3ին 71 Ave. Kléber.

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամներըայսօրՇբ. իրիկուն ժամը 9ին, Ֆլորիայի մէջ: Կարեւոր օրակարգ:

ՍԹԱՆՈՉԻ Երիտասարդաց միութեան ընդհ. ժողովը այսօր շաբաթ իրիկուն ժամը 9ին 164 Ave. Verdun, Café Marbot, Իսի-լէ-Մուլինօ: Կը խօսի՝ Պ. Բենօ Նալչաճեան:

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ վարժարանի սրահին մէջ վաղը՝ կիրակի ժամը 3.30ին մեծաւոր Հ. Յովհ. վրդ. Թորոսեան կը բանախօսէ՝ «Մխիթարեանց գրական գործունէութեան» մասին: Հասցէ՝ 26 Rue Troyon, Sèvres. Հանրակառք՝ թիւ 1:



## Ուշադրութի՛ւն

Մայքըլ Արլէնի «ԿԱՆԱՆՉ ԳԼԽԱՐԿԸ» վէպին համար գրատուած 15 օրուան պայմանաժամը թէեւ լրացած է, բայց շատ մը խնդրանքներ չկրնալով մերժել, մինչեւ 10 ապրիլ եւս երկարաձգուած է զեղչեալ սակի պայմանը՝ 25 ֆրանք (փոխանակ 37ուկէսի): Կը ստանան անոնք միայն, որոնք իրենց նամակին կը ներփակեն 25ֆրանքնոց մանտափոստ մը: Դիմել՝ գրատուն Յառաջ G. Tzerikiantz, 13 Rue des Dominicains, Marseille.




EMPIRE Միւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H. STEPHAN

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Հ. Մ. Ը. Մ.ի Պիյեանքուռի եւ իսի լէ Մուլինօի մասնաճիւղը կը հրաւիրէ բոլոր սկաուտներու ծնողքները այսօր կիրակի ժամը 2.30ին, սկաուտական Թէյասեղանի մը, 28 Rue Nationale Billancourt Պ. Սուրէն Նաւավարեանի ճաշասրահը: կը հրաւիրուին սկաուտ արծանագրուիլ փափաքողները:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

13 Ապրիլ կիրակի իրիկուն ժամը 8.30ին, Théâtre Albert 1er 64 Rue du Rocher, Métro Gare St. Lazare.

*Փարիզահայ Տրամաթիք Թատերախումբը*

*Նախաձեռնութեամբ ՇԱՀԱՆ ՍԱՐԵԱՆի*

*կը ներկայացնէ* Լ. ՇԱՆԹԻ „ՀԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ"ը



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Ընդդիմադիրներու նոր նահանջը

«Թայմզ»ի Րիկայի Թղթակիցը կը հաղորդէ թէ հաւաքական տնտեսութեանց առթիւ վերջերս Ստալինի կուսակիցներուն եւ համայնավար կուսակցութեան Մոսկուայի կոմիտէին միջեւ ծագած վէճը հարթուած է։ Կոմիտէն, որ կողմնակից էր շարունակել բռնի մեթոտները, նահանջած է եւ հրապարակաւ խոստովանած իր սխալը, խոստանալով ապագային աւելի լաւ ընթացք ունենալ։

Կոմիտէն կը խոստովանի, որ թէեւ իրենց հրահանգուած էր մինչեւ 1932 հաւաքականացնել ամբողջ Մոսկուայի շրջանը, սակայն իրենք խառնաշփոթութիւն ստեղծեցին գիւղացիները քշելով հաւաքական տնտեսութեանց մէջ եւ ձեռնարկելով ամբողջ ծրագիրը գործադրել այս գարնան իսկ։ Իրենց այս մեթոտը սխալ էր, ու իրաւունք ունէին Ստալին եւ համայնավար կուսակցութեան կեդրոնական կոմիտէն։ Մոսկուայի կոմիտէն պիտի ջանայ այսուհետեւ գործադրել այն ծրագիրը, զոր պարզեց Ստալին անցած հինգշաբթի խորհրդային մամուլին մէջ հրատարակուած յօդուածով մը։

## Դատական հետապնդում «Եարըն»ի դէմ

Պոլսոյ պատժական երկրորդ ատեանին առջեւ սկսած է այն դատը, որ ընդհանուր դատախազութեան կողմէ բացուած է ընդդիմադիր «Եարըն» թերթին դէմ։ Դատախազութիւնը հանրային կարծիքը գրգռող նկատած է այդ թերթին ասկէ առաջ տուած լուրը, թէ հանրապետութեան փոխ նախագահութիւն մը պիտի ստեղծուի եւ Ըսմէթ փաշա պիտի կոչուի այդ պաշտօնին։

Ամբաստանեալի աթոռին վրայ նստած է թերթին խմբագրապետ Արիֆ Օրուճ պէյ։

Ինչպէս մամուլի բոլոր դատերը, այս դատն ալ հետաքրքրութիւն ստեղծած էր եւ բազմաթիւ ունկնդիրներ ներկայ էին դատավարութեան, որուն շարունակութիւնը յետաձգուեցաւ ապրիլ 19ին, կարգ մը թուղթեր բերել տալու համար։

## Կանտի հիւանդ է, ընկերները կը գործեն

Կանտի հիւանդ է ու յոգնած, ուստի քանի մը օր պիտի հանգչի։ Սակայն իր կուսակիցները տենդոտ գործունէութեան մէջ են եւ կը շարունակեն աղ հաւաքել։ Կամաւորներ Տանտիի մօտերը գտան բնական աղի նոր ճախճախուտ մը եւ ամբողջ գիշերը հաւաքեցին հոն գտնուած աղը։ Պոմպէյի մէջ ձերբակալուեցան երկու կամաւորներ, որոնք հրապարակով մաքսանենգուած աղ կը ծախէին։ Անոնցմէ մէկը կ'ուզէր տեղւոյն դատաւորին աղ ծախել։

Համաճնդկական համաժողովի վարիչներէն մէկը ձերբակալուեցաւ՝ երբ Պալսոր կ'երթար ցոյց կազմակերպելու համար։ Համաժողովի Նախագահ Փանտիթ Նէհրուի դրօշին տակ Կանտիի կուսակիցներէն խումբ մը սկսաւ աղ պատրաստել առջի օր Ալլահապատի մէջ։ Հանտիայի մէջ ոստիկանութիւնը գրաւեց աղ հաւաքելիք բոլոր գործիքները։ Կալկաթայի քաղաքապետը իր կնոջ հետ Մահիս-Պաթան գնաց՝ ներկայ ըլլալու համար քաղաքացիական անհնազանդութեան ցոյցի մը։ Հոն ճառ մը խօսելով ըսաւ. «Բոլորս ալ մօտ օրէն բանտին մէջ իրար պիտի գտնենք»։

Պաշտօնեաներու բոյկոտը հետզհետէ կը սաստկանայ։ Խանութպանները կը մերժեն պաշտօնեաներուն ծախել անոնց առօրեայ ապրուստին համար անհրաժեշտ նիւթերը, որով անոնք ստիպուած են այդ բաները բերել տալ ամէնէն մօտիկ մեծ քաղաքներէն։



## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր Սերոբ խումբի ժողովը վաղը կիրակի ժամը 2.30ին 184 Ave d'Italie. Մէթրօ Մէզօն պլանշ։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընկերները խորհրդակցական ժողովի կը հրաւիրուին վաղը կիրակի առաւօտ ժամը 10ին 131 Fbg. du Temple:

### ԳԱՒԱՌ

Հ. Յ. Դաշնակցութեան Լիոնի կոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, վաղը կիրակի առաւօտ ժամը 8.30ին 202 Rue Boileau: Ներկայանալ անդամատետրերով։ Բացակայողները նկատի պիտի առնուին։

ՏԷՍԻՆԻ կոմիտէի ընկերական արտակարգ ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի իրիկուն ժամը 5.30ին քաֆէ Ժարտէնի մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՏԷՍԻՆԻ Հ. Յ. Դ. Պատ. Միութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի իրիկուն ժամը 7ին քաֆէ Ժարտէնի մէջ։ Կը հրաւիրուին անդամ եւ ոչ-անդամ պատանիները։

ՎԻԷՆԻ շրջ. կոմիտէի ներկայացուցչական ժողովը վաղը կիրակի ժամը 1ին Հ. Յ. Դ. Ակումբին մէջ, 139 rue Lafayette: Ռոստոմ (Շաս), Մոկացի Գրիգոր (Սէն Ռանպէր), Ապառաժ (Բասկալ), և Քրիստափոր (Վիէն) խումբերէն կը խնդրուի որ իրենց ներկայացուցիչները ներկայ ըլլան որոշեալ ժամուն։ Բացակաները պատասխանատուութեան պիտի ենթարկուին։



ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԷՍԻՆԻ Սեբաստիոյ նահանգային Ուսումնասիրաց Միութեան երեկոյթը 11 Մայիս կիրակի ցերեկ Նովէլթիի թատերասրահին մէջ։ Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը։

ՓԱՐԻԶԻ Ակնայ Հայր. Միութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 3ին Ֆլորիայի վերնայարկը, 61 Rue Monsieur-le-Prince (6)։ Կարեւոր օրակարգ։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։

EMPIRE Միւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Մ. Ը. Մ.ի Իթալի[…] ճիւղին կողմէ, իր հիմն[…] թեան 4րդ տարեդարձին […] այս կիրակի ժամը 2ին 1[…] d'Italie: Ներկայացում, սկ[…] կան խաղեր, տողանցք, բ[…] արտասանութիւն, երգ, […] խմբերգ եւայլն։
ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

կայացուցչութիւն մը՝ արտաքին առեւտուրի մենաշնորհի սկզբունքներուն համաձայն։

Նոր դաշնագիրը միայն առեւտրական խնդիրներու չի վերաբերիր, այլ կը պարունակէ նաեւ մասնաւոր տրամադրութիւններ՝ դիւանագիտական անձեռնմխելիութիւն տալու համար Անգլիոյ առեւտրական պատուիրակութեան պաշտօնեաներու անսահման թիւի մը։ Դաշնագրին մէջ համաձայնութիւն մը չէ գոյացուած պարտքերու խնդրին մասին։ Ըսուած է միայն թէ ի՛նչ հիման վրայ պիտի կատարուին բանակցութիւնները այդ մասին։

## Հնդկական շարժումը

Ալլահապատի մօտ առջի օր ձերբակալուեցաւ Փանտիթ Նէհրու, կանտիի գլխաւոր գործակիցը եւ վեց ամիս բանտարկութեան դատապարտուեցաւ։ Այս լուրին վրայ, Պոմպէյի բոլոր խանութները փակուեցան իբրեւ բողոքի նշան եւ այդ օրը Սուգի Օր յայտարարուեցաւ։

## Ֆաշիստ եւ բոլշեւիկ իրար կը սպաննեն

Ապրիլ 6ին փարիզեան արուարձան Փանթէնի մէջ կռիւ մը ծագած էր իտալացի համայնավարներու եւ ֆաշիստներու միջեւ։ Կ'երեւի այս վերջիններու մատնութեան վրայ, համայնավարները ձերբակալուեցան եւ քանի մը օր բանտ մնալէ վերջ ազատ ձգուեցան։ Ֆաշիստներն ալ որ վիրաւորուած էին՝ հիւանդանոց մնացին քանի մը օր եւ դուրս ելան։ Վիրաւորներէն Թասքարիօ ուրիշ երեք ֆաշիստ ընկերներով առջի իրիկուն ավընիւ Մաքտոնալտի մէկ սրճարանն էին, երբ ներս մտան հինգ իտալացի համայնավարներ, իտալուհիի մը հետ, որ ցոյց տալով ֆաշիստները՝ իր ընկերներուն ըսաւ. «Ասոնք էին ձեզ մատնողները։»

Ֆաշիստները՝ կռիւէ չբռնուելու համար՝ սրճարանէն դուրս ելան, համայնավարները անոնց ետեւէն։ Ֆաշիստներէն երկուքը փախան։ Միւս երկուքը հնազանդեցան բոլշեւիկներու «ձեռքերը վե՛ր» հրամանին եւ անշունչ գետին ինկան անոնց արձակած գնդակներէն. Նախ քան մեռնիլը, զոհերէն մէկը յաջողած էր կրակել եւ ծանրապէս վիրաւորել բոլշեւիկ մը։ Յարձակողներէն մէկը՝ Անթոնիօ Անկարօ ձերբակալուեցաւ։

## Արաբները մարախներուն դէմ

Երուսաղէմէն կը հաղորդեն թէ շնորհիւ ձեռք առնուած նախազգուշական միջոցներուն, մարախի խումբերը մեծ վնաս մը չկրցան հասցնել Պաղեստինի։ Մեծ թիւով պաշտօնեաներ շարժման մէջ դրուած են, իսկ աղէտեալ շրջանի ֆէլլահները սիրայօժար կը գործակցին մարախները բնաջնջելու աշխատանքին, որովհետեւ անցած տարի ալ ձեռք առնուած գիտական մեթոտներուն շնորհիւ էր որ հունձքերը փրկուեցան։ Մարախները մասնաւորաբար կը խուժեն Սինայէն, Արաբիայէն եւ Անդրյորդանանէն, ուր արդիական պաշտպանողական միջոցներ ձեռք չեն կրնար առնուիլ, սակայն հազարաւոր արաբիլներու բանակներ կը գործակցին իշխանութեանց՝ այդ միջատները փճացնելու համար։

Անցեալ օր Քանթարայէն (Սուէզի ջրանցք) Երուսաղէմ գացող կառախումբը մօտ մէկ ժամ յապաղում ունեցաւ, որովհետեւ մարախները կէս մեդր բարձրութեամբ պատնէշ մը կազմած էին փայրաշարժին դիմաց։










ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Զ. Ե. Ռ. Միութեան Իսի-լէ-Մուլինօի եւ Պիյանքուռի մասնաճիւղին կողմէ այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ 68 Ave. Ernest Renan. Քաղաքապետարանի սրահը։ Մուտք 5 ֆրանք։

կը խօսին՝ ՔԱՂԱՔԱՊԵՏԸ եւ Պ. Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Հրազդան խումբի ժողովը՝ այսօր չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր է։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերը.

Այսօր Կուկունեան, Քրիստափոր եւ Կայծակ խումբերը Գրադարանին մէջ։

Իսկ Ուրբաթ օր Վրէժ, Արամ եւ Զաւարեան, Գրադարանի սրահը։ Բացակայողները նկատի պիտի առնուին։

ԼԻՈՆԻ Պատ. Միութեան վիճաբանական ժողովը՝ վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը Յին Գրադարանի սրահը։ Նիւթ՝ Մեր Յեղափոխական անցեալը։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ Զ. Ե. Ռ. Միութեան դասախօսական ժողովը՝ այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 79 Rue des Chambards. Անիէռ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր է։

Հ. Մ. Ը. Մ.ի Պուա Քոլոնպի մասնաճիւղի բոլոր անդամ եւ անդամուհիները կը հրաւիրուին այսօր չորեքշաբթի գիշեր ժամը 9ին Salle de la Municipalitéի սրահը, երգչախումբի փորձերուն, ղեկավարութեամբ Պ. Սաքօ Յակոբեանի։

ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿ. ԺՈՂՈՎՐԴ. դասախօսութիւնը վաղը Հինգշաբթի իրիկուն, ժամը 9ին Սոսիէթէ Սավանթի սրահին մէջ։ Կը խօսին տոքթ. Թորգոմեան (Մորթային առողջապահութիւն) եւ տոքթ. Գրիգորեան (Վեներական ախտերու առողջապահութիւն)։ Մուտքը ազատ է։

### ԱՆԱՏՈԼՈՒԻ ԲԵԿՈՐՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

Լիոնի Աֆիոնի Հայրենակցական միութեան թարար մասնաճիւղի ցանկը.—

Հ. Քիւրքճեան 32, Կ. Տիլտարեան 30, Յ. Շահինեան 25, Ա. Քիւրքճեան, Մ. եւ Ա. Քիւրքճեան, Հ. Աւետիսեան, Խ. Աւետիսեան, Ս. Աւետիսեան, Գ. Թուֆանեան, Ա. Տիւյմէճեան, Ա. Պըչագճեան, Հ. Փոթիգեան 20ական, Գ. Քիւրքճեան 15, Բ. Տիլտարեան, Յ. Քիւրքճեան, Սահակ, Սրբուհի, Բերուզիկ, Մարիամ, Բարսեղ եւ Նուարդ Քիւրքճեաններ, Օ. Թուֆանեան, Ս. Թուֆանեան, Ա. Ճորճալեան, Մ. Փալանճեան 10ական, Յ. Չորճալեան, Ա. Փալանճեան, Մ. Քիւրքճեան 5ական, Փոքրիկն Լուիզ Աւետիսեան 3։ Ընդհ. գումար 440 ֆրանք։ (Շար.)

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻՒԻ ՄԷՋ

կազմակերպուած Հ. Յ. Դ. ենթակոմիտէի կողմէ, այս կիրակի ժամը 2.30ին Բէվէյլի յունական թրիեանօ սրահը։ կը ներկայացուի «ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ»

— Պ. Տիրան Ալիքսանեան որ Ալեքսանդրիայէն եկած է կը փնտռէ Իզմիրի իր դասընկերներէն Պ. Գէորգ Ղազարեանը։ Կը կարծուի թէ կը գտնուի Պէլվիլ։ Իմացնել իր հասցէն «Յառաջ»ի։

Այրի տիկին Արուսեակ Խուպէսէրեան, Պ. Շաւլ Խուպէսէրեան եւ Պ. Աշոտ Խուպէսէրեան սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր՝

ՊԱՐՈՅՐ ԽՈՒՊԷՍԷՐԵԱՆԻ

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ Ապրիլ 5ին Պուշիրի (Պարսկաստան) մէջ։











## ՍԱԿԱՐԱՆ
15 Ապրիլ 1930

| ԴՐԱՄՆԵՐ | | Ֆր. |
|---|---|---|
| Սթերլին, | L. St. | 124.16 |
| Տոլար, | Dollar | 25.53 |
| Մարք 100 | Mark | 609.25 |
| Թրք. Թղթ. | L. Trq. | 12.06 |
| Թրք. ոսկի | » » or | 110.— |
| Մէճիտիէ | Médjidié | 6.20 |
| Լէվա 100 | Léva | 18.62 |
| Տրախմի » | Drachme | 33.25 |
| Լիր » | Lire | 133.85 |
| Պելժ. ֆր. » | Fr. Belge | 71.30 |
| Զուից. » | Fr. Suisse | 494.75 |
| Լէյ » | Leï | 15.20 |
| ԱՐԺԵԹՈՒՂԹ | | |
| Եգ. Քր. Ֆոնս. | I Cr. Fonc. Eg. | 2150.— |
| » | II » | 1520.— |
| » | III » | 1500.— |
| Խումելի երկթղ. | Lots turcs | 82.50 |

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ



Տիկ. ՋԱՊԷԼ ԱՐԱՄ (ՓԱՆՈՍԵԱՆ)
Հայկական տարազով

ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՀԱՆՐԱԾԱՆՕԹ ԵՐԳՉՈՒՀԻ ՏԻԿԻՆ **ՋԱՊԷԼ ԱՐԱՄ**

ԻՐ ՄԻԱԿ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ԿՈՒՏԱՅ

*Յառաջիկայ Ապրիլ 26ի Շաբաթ իրիկունը Սալ Կավօի մեծ ամփիթատրոնին մէջ,* 45 Rue de la Boëtie

ՀԱՅԿԱԿԱՆ ՏԱՐԱԶՈՎ Կ'ԵՐԳԷ՝ ՕՐՕՐ, ՄԻ՛ ԼԱՐ, ԵՍ ՊԼՊՈՒԼ ԵՄ, ԵԿԱՒ ԳԱՐՈՒՆ, ՆՈՐ ՕՐՕՐ ԵՒ ՀՕՅՆԱՐ

*Տոմսերը կը ծախուին «ՅԱՌԱՋ»ի խմբագրատունը, ինչպէս նաեւ ՀԱՃԵԱՆ, ՍԷՄԻՐԱՄԻՍ, ՖԼՈՐԻԱ, ԼԻԼԱ, ՊԱԹԻՍԹ ճաշարանները եւ ՍԱԼ ԿԱՎՕի...*

ԳԻՆԵՐԸ՝ 40, 30, 20, 15, 10 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

*զգալի յառաջդիմութիւններ չենըրած։ Երկուստեք մեծ զաղտ. նապահութիւն կը տիրէ եւ այս առթիւ զանազան զրոյցներ կան։ Մասնաւորապէս յամառ զրոյց կը շրջի թէ Եգիպտացիները կը պահանջեն հաւասար իրաւունքներով մասնակցող Սուտանի քաղաքային եւ զինուորական վարչութեան։ Այս զրոյցը թէեւ հերքուեցաւ, սակայն Անգլիացիները չեն ծածկեր թէ խնդրին անկիւնաքարը կը կազմէ Սուտանը։*

*Միւս կողմէ, մինչ Անգլիացիները կ'առաջարկեն որ Սուէզը պաշտպանելու կոչուած անգլիական պահակազօրքերը հաստատուին ջրանցքին արեւմտեան կողմը, Եգիպտացիները կը պնդեն արեւելեան եզերքին համար։ Կը պահանջեն նոյնպէս որ դաշնագրին մէջէն ջնջուի այն նախադասութիւնը ուր շեշտուած է Սուէզի ջրանցքին կարեւորութիւնը՝ իբրեւ միութեան գիծ Անգլիոյ եւ իր գաղթապետութեանց միջեւ։ Կապիտիւլասիոններու ջնջումն ալ որոշ դժուարութիւններ կը ներկայացնէ։*

*∴ Առջի գիշեր բանակցութիւնները տեւեցին մինչեւ առտուան ժամը 4ը։ Նահաս փաշայի պահանջները շփոթութեան մատնած են արտաքին նախարար Հէնտէրսէնը։ Եգիպտացիները կը պահանջեն որ Անգլիա անմիջապէս պարպէ Սուտանի զինուորները։ Եգիպտոս պէտք է հակակշռէ ճերմակ Նեղոսի աղբիւրները։*

## «Գործազրկութեան Կիրակի»ն

*Ապրիլ 27ի կիրակին Միացեալ Նահանգներուն մէջ յայտարարուած է «Գործազրկութեան կիրակի»։ Գործազուրկներու Ազգային Դաշնակցութեան վիճակագրութեան համաձայն, Միացեալ Նահանգներուն մէջ ներկայիս անգործ են 6,600,000 հոգի։ Դաշնակցութիւնը հրաւէր ուղղած է Նահանգներու կառավարիչներուն, քաղաքապետներուն, եկեղեցիներուն եւ բարեսիրական կազմակերպութեանց՝ գործակցիլ իրեն, «Գործազրկութեան կիրակի»օրը՝կառավարութեան ուշադրութիւնը հրաւիրելու համար օգնութիւն կազմակերպելու եւ դրամ հաւաքելու գործին։*

## «Կոմս Ցէփլին»ի նոր թռիչքը

*«Կոմս Ցէփլին» նոր ճամբորդութեան մը ձեռնարկեց առջի օր կէսօրէն վերջ, Ֆրանսայի վրայէն ուղղուելով դէպի Սպանիա։ Այս անգամ ղեկավար օդապարիկը կը վարէ տոքթ. Էքըներ օգնականը՝ Լէման։ Բացի պաշտօնեաներէն ցէփլինին մէջ տեղ գրաւած են 16 ճամբորդներ։ «Կոմս Ցէփլին» կը պատրաստուի դէպի Հարաւային Ամերիկա ճամբորդութեան մը ձեռնարկել։ Այս անգամ մինչեւ Սէվիլլա գնաց ու դարձաւ իր տեղը՝ Ֆրիտրիխսհաֆէն։*

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ
## 15ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

*ԼԻՈՆ.— Նախաձեռնութեամբ Ջ. Ե. Ո. Միութեան, մասնակցութեամբ քաղաքական կուսակցութեանց եւ Հայր. Միութեանց, այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին, Գ. Թաղապետարանի շքեղ սրահին մէջ։ Երգ, նուագ, արտասանութիւն, բանախօսութիւն եւայլն։*

*ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Նախաձեռնութեամբ Եոզկատի Բարենպատ. Հայր. Միութեան եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան, այս Երկուշաբթի ժամը 2ին, Հ. Յ. Դ. սրահին մէջ։ Կը խօսի՝ Պ. ԲԱԲԿԷՆ ԱՂԱԲԷԿԵԱՆ։ Մուտքը ազատ է*

ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Ջ. Ե. Ո. Միութեան Իսի-լէ-Մուլինօի եւ Պիյեանքուրի մասնաճիւղին կողմէ այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ 68* Ave. Ernest Renan, *Քաղաքապետարանի սրահը։*

*Մուտք 5 ֆրանք։*

*Կը խօսին՝ ՔԱՂԱՔԱՊԵՏԸ եւ Պ. Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ*

*կը ներկայացուի՝* ՈՒԽՏԱՒՈՐԸ ԵՒ ԹԻՒ ՀԻՆԳ ԽԵԼԱԳԱՐԸ *(զաւեշտ)*

**Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ**
**ՅԱՌԱՋԻԿԱՅ**
**ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ**
**ԵՐԵՔՇԱԲԹԻ 22 ԱՊՐԻԼ**

# Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

*ԼԻՈՆԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ վաղը Ուրբաթ Վրէժ, Արամ և Ջաւարեան խումբերը Գրադարանի սրահը։ Բացակայողները նկատի պիտի առնուին։*

*ԼԻՈՆԻ Պատ. Միութեան վիճաբանական ժողովը՝ այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը։ Նիւթ՝ Մեր Յեղափոխական անցեալը։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։*

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

*ՊԻՅԵԱՆՔՈՒՌ Իսի-լէ-Մուլինօի «Ա. Ահարոնեան» յոբելինական յանձնախումբի անդամները Պ. Պ. Բենօ Նալճաճեան, Սուրէն Նաւավարեան, Վ. Համբարձումեան, Հ. Հանտալեան, Ն. Բշիքեան ժողովի կը հրաւիրուին այս իրիկուն ժամը 8ին Պ. Լորիս Պօլօեանի բնակարանը,* 66 Allée de la Seine, *Իսի-լէ-Մուլինօ։*

*ՍԻՓԱՆ երգչախումբի անդամները կը հրաւիրուին փորձի վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8ին* 71 Ave. Kléber.

*ՆԱՄԱԿ ունին Պ. Պ. Պետրոս Ծընկըտրեանն Տէր Միհրան Բէշիշեան։ Դիմել՝ «Յառաջ»ի վարչութեան։*

*«ՄԱՅԻՍ 28»ը կը տօնուի Պուա-Քոլոնպի մէջ, Մայիս 25ին։ Նկատի առնել այդ թուականը։*

### ՋԱՏԻԿԸ ՊՐԻՒՍԷԼԻ ՄԷՋ

Պելճիքայի կաթոլիկ հայոց հոգեւոր հովիւ Հ. Յովհ. Վրդ. Նալպանտեան կը ծանուցանէ թէ այս կիրակի Զատկի առթիւ ժամը 11.30ին պատարագ տեղի կ'ունենայ Պրիւսէլի Frères Mineurs եկեղեցին, Rue des Palais, 180.

Խոստովանանքի համար կ'ընդունի ժամը 15—16 Saint-Remi, իսկ ժամը 17—19 Saint Josse եկեղեցիները։

**Ձեռնուած** *գինով ծախու է* Goussainvilleի *մէջ 18,500 ֆր. արժող փայտաշէն միայարկ տուն մը երկու սենեակ, պարտէզով միասին 400 քառ. մեթր։ Ջուր, կազ, ելեկտրականութիւն։ Մանրամասնութիւններու համար դիմել Մ. Մազմանեանի,* 47 Rue Bisson, Paris (20)։

**Կ'ուզուի** *մետաքսէ ճերմակեղէնի մոնթէօզ* (monteuse) *մը որ գիտնայ* Point Turc. *Ժամադրութեան համար գրել՝* Lacouronne, 46 Rue Montorguil. Paris (2e).

**Շահաւէտ պաշտօններ**

*Կեանքի ապահովագրական կարեւոր տուն մը կ'ուզէ միջնորդներ եւ գործակալներ Փարիզի և արուարձաններու համար։ Դիմել ժամը 3—4,* Mr. Aranyi, 81 Rue Taiibout, *Փարիզ։*

**Կ'ուզուին** ռոպ կարող վարժ գործաւորուհիներ: Լաւ վճարում: Դիմել՝ կէսօրէ վերջ ժամը 2—5 տիկին Սուքօեանի, 25 Rue Henri Chevreau, փարիզ: մէթրօ՝ Couronnes et Ménilmontant.

EMPIRE Միւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram

### ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

*96 r. Rivoli, մէթ. Շաթլէ։ Արմատ. եւ նոր մեթոտով դարմանում արանց եւ կանանց մորթի, արիւնի եւ վեներ. հիւանդութեանց (ֆրանկախտ, ջերմամիզ.) եւ վարիսի։ Մասն. լապօռաթուար։ Խղճամիտ եւ արագ խորհրդակցութ. ամէն օր 9—12, 2—8 Կիրակի 9—12.*

ՄԱՅԻՍ 1ԻՆ ԿԸ ԲԱՑՈՒԻ











IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

## Թուրքիոյ տնտեսական ծրագիրը

Ընկերրէն կը հաղորդեն թէ տնտեսական գործավար Շաքիր պէյի կողմէ պատրաստուած տնտեսական ծրագիրը Մ. Քէմալ փաշան ալ քննած եւ սկզբունքով լաւ գտած է։ Յոյս կայ որ, այս ծրագրին շնորհիւ, տնտեսական տագնապը կարճ ատենի մէջ պիտի փարատի եւ նոյն իսկ կեանքի սղութիւնը պիտի վերնայ։ Ծրագրին ամբողջութեամբ գործադրութեան համար 500 միլիոն ոսկի պէտք կը նախատեսուի։ Ուստի մէկ տարուան մէջ չի կրնար գործադրուիլ. առնուազն 10—15 տարի կանոնաւորապէս պէտք է նոյն սկզբունքները կիրարկել։

Ծրագրին գործադրութեան համար, ելմտացոյցին մէջ դեռ աւելի խնայողութիւն կատարելը կարելի կը նկատուի։ Այս խնայողութիւնը տարուէ տարի աստիճանաբար 30 միլիոն ոսկիի պիտի բարձրանայ։ Առաջին գործերէն մէկը պիտի ըլլայ երկրագործական դրամատան 30 միլիոն ոսկի դրամագլուխը 100 միլիոնի բարձրացնել։

## Ալմազեանը ծեծողներուն դատը

Ինչպէս կը յիշուի, Ալմազեան, երբ դեռ նոր բանտարկուած էր, դատ բացած էր անծանօթի դէմ, ծեծի ենթարկուած ըլլալու ամբաստանութեամբ։ Այս խնդրին քննութիւնը կը կատարէր հարցաքննիչ դատաւոր Ժանթիլ։ Այս վերջինը իր քննութիւնները աւարտած ըլլալով, Թղթածրարը հաղորդեց դատական իշխանութեան։ Ընդհանուր դատախազի փոխանորդ Բաւանեօ պիտի պատրաստէ իր վերջնական տեղեկագիրը։ Կ'ըսուի թէ Ալմազեանի այս բողոքն ալ չեղեալ պիտի նկատուի, քանի որ հարցաքննիչ դատաւորը չէ կրցած հաստատել թէ ո՞վ է հեղինակը դատական բժիշկ Տոքթ. Փօլի կողմէ Ալմազեանի վրայ նկատուած հարուածի հետքերուն։

## Մէչէրսկիի նոր շահատակութիւնը

Ռուս արկածախնդիր մը՝ Մէչէրսքի, 1924ի ամառը Մոնփառնասի «Թէրմինիւս» պանդոկին մէջ կեղծ ռումբով եւ ատրճանակով մը վախցուցած էր Հայ գոհարավաճառներ Պ. Պ. Արմենակ Համբարձումեանն ու Ճիւհէրեանը, կողոպտելով անոնց 300,000 ֆրանքը։ Մէչէրսքի այն ատեն ձերբակալուելով դատապարտուեցաւ 5 տարի բանտարկութեան եւ Ֆրանսայէն վտարումի։

Բանտէն ելլելէ վերջ, Մէչէրսքի այս անգամ ալ նոր շահատակութիւն մը փորձեց ռուս փոփի մը վրայ, սպառնալիքի տակ 4000 ֆրանք պահանջելով անկէ։ Փոփը բողոքեց եւ Մէչէրսքի առջի օր վեց ամիս բանտարկութեան դատապարտուեցաւ։








## Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ

ժողովը կը վերսկսի իր աշխատանքներուն, այս կիրակի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ կը խնդրուի ներկայ ըլլալ ճիշդ որոշուած ժամուն։

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ
### 15ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

ԼԻՈՆ.— Յետաձգուած է։

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Նախաձեռնութեամբ Եռգկատի Բարենպատ. Հայր. Միութեան եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան, այս Երկուշաբթի ժամը 2ին, Հ. Յ. Դ. սրահին մէջ։ կը խօսի՝ Պ. ԲԱԲԿԷՆ ԱՂԱԲԷԿԵԱՆ։ Մուտքը ազատ է

## ԵՐԵԿՈՅԹ—ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Զ. Ե. Ո. Միութեան Իսի-լէ-Մուլինօի եւ Պիյեանքուրի մասնաճիւղին կողմէ ի նպաստ հիմնուելիք գրադարանին, վաղը՝ Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ 68 Ave. Ernest Renan, Քաղաքապետարանի սրահը։ Նուագ, ճագ-պանտ։ Պիւֆէ՝ ժողովրդական գիներով։

կը խօսին՝ ՔԱՂԱՔԱՊԵՏԸ եւ Պ. Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

կը ներկայացուի՝ «ՌԻԽՏԱԻՈՐԸ» ԵՒ «ԹԻՀԻՆԳ ԽԵԼԱԳԱՐԸ» (զաւեշտ)

Մուտք 5 ֆրանք

## Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ
### ՅԱՌԱՋԻԿԱՅ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ
### ԵՐԵՔՇԱԲԹԻ 22 ԱՊՐԻԼ

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 29 Bld. Carnot։ ներկայանալ անդամատետրով։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ վաղը Ուրբաթ Վրէժ, Արամ և Զաւարեան խումբերը Գրադարանի սրահը։ Բացակայողները նկատի պիտի առնուին։

## ԱՆԱՏՈԼՈՒԻ ԲԵԿՈՐՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

Լիոնի Աֆիոնի Հայրենակցական միութեան թ-րթար մասնաճիւղի ցանկը.—

Ա. Պէրպէրեան (2 քոյրեր), 50, Յ. Տէր Վահանեան 20, Գ. Գարասարգիսեան 15, Ա. Սարգիսեան 15, Կ. Գարապալեան, Ա. Մովսէսեան, Ժ. Ճիգմէճեան, Ա. Ճիգմէճեան, Ս. Էմինեան, Ա. Տօնիկեան, Ս. Բոլաթեան, Գ. Յովսէփեան, Ա. Զաքարեան Վ. Նաւասարդեան, Մ. Յակոբեան, Մ. Գամբարեան, Ա. Սօլեան 10ական, Ն. Պուրնարոս եւ Ե. Բանտէյիս (2 Յոյներ), Լ. Պէշիշեան, Ս. Մէսճեան, Ա. Պէշիշեան, Վ. Վըզըլթեան, Կ. Կուզուգեան, Յ. Գօչումեան, Մ. Պարսամեան, Գ. Չէպէճեան, Օ. Շէքէրեան, Մ. Պահարեան, Ա. Մութաֆեան 5ական, Կ. Տէր Պօղոսեան 3, Ա. Պէրէսթէճեան 2, գումար 300 ֆրանք։

Լիոնի Աֆիոնցիներէ 785, Թարաբի հայրենակիցներէ 740, գումար 1525։ Ստացագիրներու եւ փոստի, եւայլնի ծախք 25 ընդհ. գումար 1500 ֆր.։

Տես Յառաջ 11 փետր.

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

26 Ապրիլ Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս։

Փարիզի Ազգասէր Օժանդակ Օրիորդաց Միութիւնը ապրիլ 26ին համար, ընտանեկան պարահանդէս-երեկոյթ մը կազմակերպած է, Ուաշինկթըն փալասի շքեղ սրահներուն մէջ, 14 rue Magellan, Metro Georges V. նպատակը բարի, մուտքը աժան եւ միջավայրը խիստ հաճելի։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
### ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻՒԻԻ ՄԷՋ

կազմակերպուած Հ. Յ. Դ. ենթակոմիտէի կողմէ, այս կիրակի ժամը 2.30ին Բէվէյլի յունական Թրիեանօ սրահը։ կը ներկայացուի

«ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ»




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

# ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿԻ 15ԱՄԵԱԿԸ

*Այս կիրակի իրիկուն ժամը 9ին* **PETIT JOURNAL***ի սրահը* **21 RUE CADET**

## ՊԻՏԻ ՏՕՆՈՒԻ ՄԵԾ ՇՈՒՔՈՎ, ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Զ. Ե. Ռ. Մ. ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ, ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ, "ՌՈՍՏՈՄ" ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆՑ Ա. Ե. Հ. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ, Հ. Մ. Ը. Մ.Ի ԵՒ ՀԱՅ ՍԿԱՈՒՏՆԵՐՈՒ

1.— Mlle LEICKNAM-CACHEUX, 1er Prix du Conservatoire National de Paris, Violoniste. a) *Երգ Պանդուխտի՝ Տ. Ալեքսանեանի*,— b) Air Islandais: Kreisler*ի*,— c) Chanson du vent: Dorson*ի*

2.— LE QUATUOR, a) *Խորհուրդ Խորին*, b) *Օրօր*, c) *Հով արէք՝ Տ. Ալեքսանեանի*:

3.— Mlle GENEVIÈVE MARTINET, 1er Prix du Conservatoire National de Paris. a) *Ալագեազ՝ Տ. Ալեքսանեանի*,— b) Romance: Balbastre*ի*,— c) Sonate: Cassado*ի*,— d) Aria: Bach*ի*:

*Կը մասնակցին նաեւ Օր. ՂԱԶԱՐՈՍԵԱՆ՝ դաշնակով, Օր. ԳԱՐԻՊԵԱՆ եւ Ս. ՆԱԽԱՍԱՐԴԵԱՆ հայերէն երգերով:* *Մ ու տ ք ը  ա զ ա տ  է*

### Վ Ա Լ Ա Ն Ս

*Նախաձեռնութեամբ Զաւ. Երկսեռ Ռ. Միութեան: Վաղը շաբաթ ժամը 8ին, Պետական Թատրոնին վերնայարկը: Կը նախագահէ ՊՍԱԿ քհնյ.: Կը խօսին Զ.Ե. Ռ. Մ.եան կողմէ Պ. Թ. ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆ, Հ.Յ.Դ.եան կողմէ Պ.Հ.ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ:*

### Ռ Ո Մ Ա Ն

*Կիրակի ցերեկ: Կը խօսի՝ Պ. Թ. ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆ:*

### Փ Ո Ն Տ' Օ Պ Ն Ա

*Կիրակի իրիկուն:* » »

### Կ Ա Ր Տ Ա Ն

*Այս կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին Հ. Յ. Դաշնակցութեան տան մէջ, նախաձեռնութեամբ կարտանի հայ գաղութի Ուսում. Միութեան, եւ մասնակցութեամբ, Հ. Յ. Դաշնակցութեան, Ս. Դ. Հնչակեան, Ռամկավար Ազատական կուսակցութեանց, Վալապրի Ուսանողական Միութեան, Ա. Ե. Հայ Կարմիր Խաչի մասնաճիւղին, Պիվէրի, Մանկապարտէզի կրթասիրաց Միութեան, Գոմք Գիւղի Բարեսիրաց Միութ... եւ Հօկի մասնաճիւղին:*

*Առաւօտուն հոգեհանգիստ-պատարագ նոյն վայրին...*

*Մանրամասնութիւնները առանձին յայտագրով:*

### Փ Ո Ն Տ Ը Շ Է Ր Ի Ի

*Նախաձեռնութեամբ Ազգ. միութեան եւ մասնակցութեամբ ազգ. եւ քաղ. կազմակերպութեանց:*

*Այս կիրակի ժամը 2ին Օթէլ տը Ֆրանսի սրահին...*



Տիկ. ԶԱՊԷԼ ԱՐԱՄ (ՓԱՆՈՍԵԱՆ)
Հայկական տարազով

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՀԱՆՐԱԾԱՆՕԹ ԵՐԳՉՈՒՀԻ ՏԻԿԻՆ **ԶԱՊԷԼ ԱՐԱՄ**

ԻՐ ՄԻԱԿ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ԿՈՒՏԱՅ

*Վաղը Շաբաթ իրիկուն Սալ Կավօի մեծ ամփիթատրոնին մէջ,* 45 Rue de la Boëtie

ՀԱՅԿԱԿԱՆ ՏԱՐԱԶՈՎ Կ'ԵՐԳԷ՝ ՕՐՕՐ, ՄԻ ԼԱՐ, ԵՍ ՊԼՊՈՒԼ ԵՄ, ԵԿԱՒ ԳԱՐՈՒՆ, ՆՈՐ ՕՐՕՐ ԵՒ ՀՕՅՆԱՐ

*Տոմսերը կը ծախուին «ՅԱՌԱՋ»ի խմբագրատունը, ինչպէս նաեւ ՍԷՄԻՐԱՄԻՍ, ՖԼՈՐԻԱ ճաշարանները եւ ՍԱԼ ԿԱՎՕԻ կիցն*

ԳԻՆԵՐԸ՝ 40, 30, 20, 15, 10 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

*Մէկ գիւղին բնակիչները ապստամբած են անգլիական իշխանութեան դէմ: Բրիտանական «Լիւփին» Թնդանօթակիրը ռմբակոծեց ապստամբ գիւղը:*

## *Մարախները Պարսից Ծոց ինկած*

*ՊԱՍՐԱ, 24 ապրիլ.— Մարախներու Թանձր ամպ մը Իրաքի հողը խուժելու վրայ էր, երբ յանկարծ սաստիկ հով մը ելաւ և դէպի Պարսից ծոցը քշեց «հունձքերու փրձանքը»: Անապաշտ ժողովուրդը այս բնական երեւոյթին մէջ տեսաւ աստուծոյ մատը, որ ուզած էր պահպանել երկիրը ահաւոր աղէտէ մը:*

*Արաբները ամենավերջին դրութեամբ ինքնապաշտպանութեան դիմեցին մարախներու աւերն արգիլելու համար: Հակառակ ատոր մարախները կը շարունակեն իրենց արշաւը: Ուղտապան մը, որ Միջագետքէն մինչեւ կեդրոնական Արաբիա ճամբորդած էր, կը պատմէ թէ ամբողջ ճամբու ընթացքին քալած է մարախներու վրայէն: Ուղտին համետն ու իր կօշիկները ճարակ դարձած են մարախներու:*

## *Ստորերկրեայ ճամբու արկած մը*

*Չորեքշաբթի առաւօտ ժամը 7.30ին Փորթ տը Վէրսայլի և Քոնվանսիոնի կայարանին միջեւ Նոր-Սիւտի երկու կառախումբեր ուժգին ընդհարում մը ունեցան: Թիւ 9 կառախումբը կանգ առած էր Քոնվանսիոն չհասած, որովհետեւ կարմիր լոյսը կ'ազդարարէր թէ ճամբան գոց է: Իսկ ետեւէն եկող Թիւ 10 կառախումբը բոլորովին վստահ թէ ճամբան բաց է, անարգել կը յառաջանար, երբ վերջին պահուն տեսաւ առջեւի կառախումբին ետեւի վակոնին կարմիր լոյսը: Բայց շատ ուշ էր: Բախումը եղաւ խիստ սաստիկ: Վակոններուն մէջ ճամբորդները իրարու զարնուեցան, ապակիները ջարդ ու փշուր եղան: Արդիւնք՝ շուրջ հարիւր վիրաւոր, որոնց 14ը շատ ծանր: Չորս հոգի մեռնելու վտանգին տակ են: Փորթ տը Վէրսայլի եւ Քոնվանսիոնի միջեւ երթեւեկը ընդհատուեցաւ մինչեւ ժամը 16.20: Արկածը հետեւանք էր ինքնաշարժ նշաններու գործիքին լաւ չբանելուն:*



### Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ

*ժողովը կը վերսկսի վաղը Շաբաթ իրիկուն նոյն հաւաքատեղին մէջ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

### ՓԱՐԻԶԻ ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

### ՅԵՐԵԿՈՅԹ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ Ի ՊԱՏԻՒ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

*Այս կիրակի ժամը 2ին Թաղապետարանի սրահը*
148 rue Villeneuve

*Կը խօսին՝ Պ.Պ. ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ և Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ*

*Գեղարուեստական բաժին: Կը մասնակցի «Սիփան» երգչախումբը ղեկավարութեամբ Պ. Սաքօ Յակոբեանի:*

*Մ ու տ ք ը  ա զ ա տ  է*

### *ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ*

*Նախաձեռնութեամբ Պ. Ա. Սարաֆեանի, վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին Պուա Քոլոմպի քաղաքապետարանի սրահին մէջ,* Rue des Halles.

*Կը ներկայացուի՝* ԸՆՏԱՆԵԿԱՆ ԳԱՅԹԱԿՂՈՒԹԻՒՆ *(զաւեշտ 3 արար)*

*Տոմսերը նախօրօք հայթայթել Պ. Գառնիկ Յովհաննէսեանէ*

2 Rue Victor Hugo, Bois-Colombes. գին՝ 5 եւ 10 ֆրանք

### ԵՐԵԿՈՅԹ ՄԱՐՍԷՅԼԻ ՍԻՎՐԻՀԻՍԱՐԻ ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

*Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, 46 Րիւ Թափի Վէր, Սալոն Էսփանեոլի մէջ:*

*Կը ներկայացուի՝* ԵՐԵՔ ՔԱՋԵՐԸ *(զաւեշտ)*

*Գեղարուեստական բաժին* *Մուտքը ազատ է*

### Հ. Յ. Դ.

*Գ Ա Ր Ա Ռ*

*ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ենթակոմիտէի ընդհ. ժողովը այսօր ուրբաթ իրիկուն ժամը ճիշդ 7ին ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:*

*ԼԻՈՆԻ Կուկունեան խումբի ժողովը այսօր ուրբաթ երեկոյ ժամը 20.30ին գրադարանի սրահը: Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Ներկայանալ անդամատետրով:*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

Հակառակ այս ընդդիմութեանց, կանտոնի կուսակիցներուն շարժումը կը ծաւալի հետզհետէ, մտատանջութիւն պատճառելով տեղական իշխանութեանց: Անգլիացի փոխարքան ստորագրեց հրամանագիր մը, որով գործադրութեան կը դրուի 1910ի Մամուլի օրէնքը, ջնջելով 1922ի նման օրէնքը:1910ի օրէնքը խիստ միջոցներ կը տրամադրէ՝ ապստամբական ամէն շարժում զսպելու համար:

Առնալայի մէջ ձերբակալուեցաւ աննկազանդութեան պայքարի վարիչ Փունա:

⁂ Հնդկաստանի իսլամ վարիչները հրաւիրեցին հնդիկ «չափաւոր» ազգայնականները համաժողովի մը, որ տեղի պիտի ունենայ Պոմպէյի մէջ մայիս 14ին եւ որու ընթացքին իսլամ եւ հնդիկ պիտի խորհրդակցին միացեալ եւ զօրաւոր ճակատ մը կազմելու միջոցներուն մասին, երբ ժամանակը գայ Հնդկաստանի ժողովուրդին պահանջները ներկայացնելու անգլիական կառավարութեան:

Կալկաթայի մէջ նոր ընդհարում մը տեղի ունեցաւ Հնդիկներուն եւ ոստիկանութեան միջեւ: Այս վերջինները քարկոծուեցան եւ տուին 16 վիրաւորներ: Ասոր վրայ ոստիկանները կրակ բանալով սպաննեցին մէկ Հնդիկ եւ վիրաւորեցին 30 հոգի:










## ՆՈԹԱՆԵՐ

Արշին Մալ ալանի եւ շատ մը ուրիշ երգերու սոյն նօթաները պատրաստուած փրոֆ. Մոսկոֆեանի կողմէ շատ մաքուր եւ շքեղ:

Դաշնակի բաժին՝ գին 2.50 տոլար, Արշին Մալ ալան, ջութակի բաժին գին 1.50 տոլար: փունջ երգեր՝ դաշնակի բաժին 3 տոլար, 50 երգ մէկ գիրք, փունջ երգեր՝ ջութակի բաժին 2 տոլար, 50 երգ մէկ գիրք: Դիմել՝ H. Mamasianի, 137½ East 27th St., New York, U. S. A.







## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԼԻՈՆԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ

ներկայացուցչական ժողովը կը գումարուի այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ, 262 rue Deguesclin:

## ՅՈՐԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍՆԵՐ
### Ի ՊԱՏԻՒ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

ԱՆԿԻԷՆ. — Այս Շաբաթ իրիկուն ժամը 9.30ին, Pavillon du Lacի մէջ.

Կը խօսի՝ Պ. ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցի «Սիփան» երգչախումբը: Մուտքը ազատ է

ՊԻՅԵԱՆՔՈՒՌ. — Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2—6, Rue de Solférino 23 Պիյեանքուռ:

Կը նախագահէ՝ Պ. Ա. ԽԱՏԻՍԵԱՆ

Կը խօսին Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ եւ Ս. ՆԱՒԱՎԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցի «Սիփան» երգչախումբը: Մուտքը ազատ է

ՍԱՐՍԷԼ. — Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Salle de Nocesի մէջ, 81 rue de Paris.

Կը խօսի՝ ԱՇՈՏ ԱՐԾՐՈՒՆԻ, Մուտքը ազատ է

ԻԹԱԼԻ-ՊԻՍԷԹՐԸ. — Հանդէսը յետաձգուած է:



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Ջաւարեան խումբի ժողովը՝ այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը:

ԼԻՈՆԻ Վրէժ խումբի ժողովը՝ այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը՝ այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին, Ընկ. Նիկողոսեանի ճաշարանը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Խիստ կարեւոր օրակարգ:

ՏԵՍԻՆԻ Պատանեկան Միութեան վիճաբանական ժողովը՝ վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 7.30ին Սօսիէթէ Լիոնէզի ճաշասրահին մէջ: կը հրաւիրուին բոլոր չափահաս պատանիները:

— Շապին Գարահիսարի Մեծ Աճպտերի Ղրաճ գիւղէն կը փնտռուի Յակոբ Էրնէկեան (Մաճարեան), հօր անունը՝ Նիկողոս, մօր անունը Եւա: Իմացնել՝ Խաչիկ Վարդանեանի՝ 13 Rue Jean Jacques Rousseau, Sarcelles (S. et O.): Ճշգրիտ լուր տուողին 50 ֆրանք նուէր:

— Կը փնտռուի Եսթեր Պալթայեան եւ զաւակները Արտէմիս եւ Գէորգ: Նաեւ իր քոյրը Նըվրիկ Ուստաեան որ երեք տարի առաջ Յունաստանէն մեկնած է Պէյրութ: Իմացնել՝ Իզմիրցի Յակոբի աղջկան Արշակուհի Գազանճեանի c/o A. Der Stépanian, 43 Rue Piat, Paris (20e)

Կիրասոնի Արդաւուս գիւղացի Անդրանիկ Տէր Վարդանեան, կը փնտռէ իր հայրը՝ Ղազար, մայրը՝ Սանդուխտ, քոյրը Վառվառ, հօրեղբօրորդին Մաթէոս: Տարագրութենէն վերջ Պոլիս կը գտնուէին: 7 տարիէ վեր լուր չկայ իրենց մասին: Իմացնել՝ Varvar Marcarian, 4 Cité du Midi Dècines Isére. —

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՍԻՓԱՆ երգչախումբի անդամուհիները փորձի կը հրաւիրուին այսօր չորեքշաբթի երեկոյ իսկ անդամները ուրբաթ երեկոյ ժամը 8ին 71 Av. Kléber.

ԱՌՈՂՋԱՊԱՀ. Ժողովրդային դասախօսութիւն վաղը Հինգշաբթի իրիկուն, ժամը 9ին Սոսիէթէ Սավանթի սրահին մէջ: Կը խօսին Տոքթ. Եաղուպեան եւ Կ. Յ. Բասմաջեան: Մուտքը ազատ է:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Մ. Ս. Պօղոսեան, Մարսէյլ. — Տես «Յառաջ» 24 ապրիլ:

## Պ. Գ. ՍԻՆԱՆԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Յայտնի Ջութակահար Պ. Գէորգ Սինանեան նոր նուագահանդէս մը կուտայ այսօր չորեքշաբթի, 30 ապրիլ, ժամը 9ին Conservatoireի սրահին մէջ, 2bis rue du Conservatoire: Յայտագրին մէջ «Հայաստան» (Յ. Սինանեան), «Հայաստանի Ողբը» (Վ. Մախոխեան), ինչպէս նաեւ Պախ, Պէթովէն, Շոփէն-Հիւպէրման, Բրայլէր, Ֆուրլանի եւ ուրիշներ: Տոմսերը՝ 5—30 ֆրանք:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Քալամաթայէն Պրուսայի Մեծ-Նոր գիւղացի Գրիգոր Մինասեան կը փնտռէ իր քոյրը Խոնարհիկ Մինասեան (27 տարեկան), որ առեւանգուած էր Բէսիւլայնի մէջ: Այժմ կը կարծուի Տէր-Զօր ըլլալ: Կը խնդրուի տեղեկութիւն ունեցողներէն «Յառաջ»ի միջոցաւ իմացնել Hagop Ghougassianի Odos Paron, Panapoion, Kalamata. Grèce.

Կը խնդրուի սուրիահայ թերթերէն արտատպել:

— Կը փնտռուի Տիկ. Աղաւնի Սուրմէեան (ծնեալ Դշխոեան) որ 1920ին կը գտնուէր Պոլիս: Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Փարիզ: Իմացնել՝ Պ. Վանեանի, Boite Postale, No. 66, Khartoum, Soudan.




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN